## ՏԱՂ ՍՈՒՐԲ ԾՆՆԴԵԱՆ



Այսօր տօն է (Սուրբ) Ծննդեան, ալէլուիա.
Տեառն մերոյ եւ յայտնութեան, ալէլուիա:

Այսօր արեւն արդարութեան, ալէլուիա.
Երեւեցաւ ի մէջ մարդկան, ալէլուիա:

Այսօր սուրբ Կոյսն անապական, ալէլուիա.
Ծնաւ եբեր զանմահ արքայն, ալէլուիա:

Այսօր հրեշտակք յերկնից իջան, ալէլուիա:
Ընդ մեզ օրհնեն զանմահ արքայն, ալէլուիա:

Այսօր դժոխքն սասանեցան, ալէլուիա.
Գունդք դիւաց յոյժ տրտմեցան, ալէլուիա:

Այսօր չարքն կարկեցան, ալէլուիա.
Եւ ադամեանքն ուրախացան, ալէլուիա:

*Արտատպուած Ն. Յակոբեանի կազմած*
ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՏԱՐԱԳԻ ՏԱՂԵՐ ԵՒ ՄԵՂԵԴԻՆԵՐ
*ժողովածուէն*

# ԾՆՈՒՆԴԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄԸ

*Գրեց ՅՈՎՍԷՓ ԹԸԳԸՐԵԱՆ*

Ծնունդի իրական պատմութիւն մը չէ որ պիտի պատմեմ, այլ ողիսականը Ծնունդ անունով հայ աղջկան մը, սիրոյ քրոջ մը, որուն յիշատակն ու կարօտը, շատ տարիներ ետք, կ՚արտասուեն դեռ իմ սրտիս մէջ։

Մեր գրացուհիին միամօր աղջիկն էր Ծնունդը, հազիւ տասնեւհինգ գարուններ բոլորած։ Ծնունդի օր մը ծնած էր և Ծնունդ անուանած էին զինքը։

Մանկութեան ու պատանեկութեան անբաժան ընկերուհիս էր Ծնունդը։ Երկայնահասակ, գեղանի և բոցավառ աչքերով աղջիկ մըն էր։ Կը սիրէի զինք իբրեւ իմ կրտսեր քոյրս։ Շատ կանուխէն մեռած էր իր հայրը և այրի մօրը խնամքին ու գուրգուրանքին առարկան էր ան։

Գեղեցիկ և հրապուրիչ կին մըն էր տիկին Ջեբեթուհին։ Շատեր ուզած էին ամուսնանալ անոր հետ, բայց ան՝ միշտ մերժած էր և անդրդուելի մնացած։

Երբ ես բարձրագոյն ուսում ստանալու համար մեկնեցայ իմ հայրենի գիւղէս՝ Սելճուքեան մայրաքաղաք Իկոնիոն, Ծնունդը մեկնումի օրս եկաւ մեր տունը ողջերթ մաղթելու ինծի։ Իր աչքերուն մէջ արցունք կար։ «Ուրեմն կը մեկնիս և քոյրդ առանձին կը թողուս հոս», ըսաւ ան։ Չափազանց յուզուեցայ իր այս խօսքէն և իմ ալ աչքերս լեցուեցան արցունքով։ Ան մինչեւ «Կալեր»ու ճամբան ընկերացաւ ինծի ու երբ վերջին անգամ բարով ըսի իրեն, առտուան արշալոյսին պէս պայծառ իր դէմքը յանկարծ տժգունեցաւ և մեղրամոմի մը գոյնը ստացաւ։

«Տո՛ւր», ըսաւ Փիլիկ մօրեղբայրս, որ գլխ իր ձիով Նալովա, պիտի տանէր ու անկէ շոգենաւով Նիկոմիտիա պիտի ճամբորդէի. «Եկո՛ւ ու ձին հեծի՛ր»։ Ծնունդ իր տխուր ակնարկը Փիլիկ մօրեղբօրս դարձուց. ապա ինծի դառնալով՝ տխուր շեշտով մը յարեց. «Մի՛ մոռնար զիս, պիտի գրես ինծի, այնպէս չէ՞»։

Յետմիջօրէի վախճանին մօտ էր, մեր գիւղի արեւին վերջին ցոլքերը հետզհետէ հորիզոնէն դէպի վար կը սահէին։ Մնաս բարո՛վ, Ծնո՛ւնդ, մնա՛ս բարո՛վ հայրենի գիւղ և մնաք բարով հայրենի սիրելի դէմքեր։

Փիլիկ մօրեղբայրս, որ դրամէն զատ ուրիշ բան չէր ճանչնար, սկսաւ կշտամբել զիս, «Պիտի ուշանանք և ճիշդ ժամանակին պիտի չհասնինք Նաւահանգիստ», ըսաւ։

Հինգ երկար տարիներ Ծնունդը դարձեալ տեսնելու առիթը չունեցայ երբեք։ Եւ երբ ծննդավայրս վերադարձայ, ան չկար գիւղին մէջ։ Ըսին թէ երեք տարի առաջ իր մայրը ամուսնացած էր մերձակայ հայ գիւղէ մեծահարուստի մը հետ և Ծնունդն ալ իր հետ տարած։

Այդ մերձաւոր գիւղին մէջ հօրս հօրեղբօրորդին կար։ Փափաքեցայ որ օր մը երթամ ու տեսնեմ զինք ու իր զաւակները։

Կիրակի առաւօտ մը, հեծելով ճամբայ ելայ ու մէկ ժամէն հասայ յիշեալ գիւղը։ Յաջորդ օրը առաջին փափաքս եղաւ այցելել գիւղին վարժարանը, ուր երիտասարդ ուսուցիչ մը, բնիկ Նիկոմիտիացի, դիմաւորեց զիս և ցոյց տուաւ նորաշէն վարժարանին բոլոր դասարանները և երկսեռ աշակերտութիւնը։

Մինչ կը խօսա ,ցէի ուսուցչին հետ, յանկարծ ուսուցչարան մտան տիկին մը և օրիորդ մը։

Սարսուռ մը անցաւ երակներուս մէջէն։ Ծնունդը և իր մայրիկն էին։ Նոյն գեղեցիկ ու վայելուչ աղջիկն էր ան ու աւելի հրապուրիչ։ Ծնունդի մայրը՝ Տիկ. Ջեբեթուհին խնդրեց որ նոյն օրն իսկ այցելութիւն մը տամ իրենց. չմերժեցի։



Ուսուցիչ եւ Գրող
ՅՈՎՍԷՓ ԹԸԳԸՐԵԱՆ

Յետմիջօրէին, արդէն իրենց տան դուռը կը բախէի։ Շատ սիրալիր ընդունելութիւն մը ըրին մայր ու աղջիկ։

Տիկ. Ջեբեթուհի խոհանոց մտաւ սուրճ եփելու համար։ Հիմա մինակ էի Ծնունդին հետ։ Ուրախութեան և տրտմութեան արցունքներ կային անոր աղուոր և արտայայտիչ աչքերուն մէջ։ Ծընունդ իր աչքերը սեւեռելով իմ աչքերուս՝ ըսաւ. «Խօսէ՛, Յովսէփ, խօսէ՛, չորս երկար տարիներու կարօտը կայ իմ սրտիս մէջ։ Կը յուսամ թէ ա՛լ չես մեկնիր պանդխտութեան ու կը մնաս գիւղը։ Ինքս ալ կուգամ հոն ու դարձեալ կը յիշենք մեր մանկութեան անոյշ օրերը ու մի՛շտ միասին կ՚ապրինք։ Խօսք տուր որ այլեւս պիտի չմեկնիս օտար երկիր»։

Տիկ. Ջեբեթուհին կանաչ ափսէի մը վրայ դրուած սուրճը բերաւ և դրաւ եռանկիւն պզտիկ սեղանի մը վրայ։ Ես և Ծնունդը Սփինքսի պէս լուռ էինք։ «Ինչո՞ւ չէք խօսիր. Ծնունդը քեզ շատ կը սիրէ», ըսաւ ան։

Յաջորդ օրը ես մեկնեցայ մեր գիւղը։ Մեկնելէս առաջ Ծընունդին գացի հրաժեշտ տալու համար։ Մայրը դրացուհիի մը տունը գացեր էր։ Մինակ էինք երկուքս ալ։ «Համբուրէ՛ զիս, համբուրէ՛ և թող այս համբոյրը քու սիրոյդ ապացոյցը ըլլայ», ըսաւ Ծնունդ, ու յանկարծ սկսաւ փղձկիլ. իր աղուոր աչքերէն արտասուքի խոշոր կաթիլներ կ իջնէին։

* * *

Անողոք ճակատագիրը այնպէս կամեցաւ որ գիւղ վերադառնալէս երեք ամիս ետք դարձեալ պանդխտութեան մեկնիմ, ու անկէ ետք երբե՛ք չտեսնեմ Ծնունդը։

Համաշխարհային առաջին պատերազմին Ծնունդն ալ տարագրուեր էր իր ծնողաց հետ և անապատին մէջ անսուաղ մեռեր էր։

Իր վերապրող ազգականուհիներէն մին, վերջերս Լիբանանէն կը գրէ ինծի. «Աքսորի դառն օրերուն Ծնունդին հետ միասին էի միշտ կը յիշէր քեզ ու կ՚ըսէր՝ երանի թէ ինքս ալ անոր ընկերանայի և բաժնէի իր բախտն ու ճակատագիրը»։

Հէ՜ք Ծնունդ, դժբա՛խտ աղջիկ, ցեղիս բազում դժբախտ աղջիկներուն պէս։ Դուն լոկ տխուր յիշատակ մը եղար ինծի համար։ Տարիներ ետք երբ կը յիշեմ քեզ, յանկարծ սիրտս կ՚արիւնի և յիշատակդ ու կարօտդ կ՚արթննան սրտիս մէջ։

(Նայրոպի) 17·12·1963

Նիւթերու առատութեան պատճառով՝ մեր թերթօնին, «Սատանայի Աղջիկը» վիպակին շարունակութիւնը կը մնայ յաջորդ թիւին։

# ՆՈՐ ՏԱՐՈՒԱՅ ԼԱՒԱԳՈՅՆ ՆՈՒԷՐԸ

ԱԼԻ ԷՄԻՆ

Կեանքի հոգերը մեզի մոռնալ կուտան մեր գործած սխալները։

Մեզի մոռնալ կուտան նոյնպէս այն չքմեղանքը, զոր կը պարտինք անոնց՝ որոնց կը զարնուինք կեանքի ինքնաշարժին հասնելու համար։

Մեր վարած տատանեալ կեանքը մեր յիշողութենէն կը սրբէ այն սխալները, որոնց տեղի տուինք և կը չափազանցէ այն սխալները, զոր ուրիշներ կը գործեն։

Իր բնութեան բերումով, մարդը իր առնելիքները կը յիշէ և կը մոռնայ իր պարտքերը։ Ես սովորութիւն ունիմ, ամէն տարեվերջին, յիշողութեանս մէջ փնտռելու անունները անոնց, զորս վիրաւորած եմ, և փորձելու յարաբերութեան մէջ մտնել անոնց հետ՝ դարմանելու համար իմ պատճառած վէրքերը, որքան ալ այդ վէրքերէն ոմանք արդիւնքն եղած ըլլան իմ անհոգութեան, իմ մտացիրութեան կամ արագօրէն կազմած իմ դատումներուս։

Այս շաբթու՝ առի մատիտս և սկսայ գրել անունները անոնց, որոնց հանդէպ թերացայ տարուան ընթացքին։ Բայց չգտայ մէկ հատիկ իսկ անուն՝ թուղթին վրայ նշանակելու համար։

Իմ միակողմանի յիշողութիւնս կարծել տուաւ ինծի, ըստ սովորութեան, թէ ես երկինքէն ինկած հրեշտակ մըն եմ եւ թէ իմ զոհերն են յանցաւորները։

Եւ սակայն, վայրկեան մը խորհրդածելէ ետք, յիշողութիւնս ինծի ներկայացուց անունը մէկու մը, զոր վիրաւորած էի։ Անմիջապէս անոր անունը գրեցի թուղթին վրայ։

Յետոյ, մատիտս սկսաւ գրել հարիւրեակ մը անուններ և այն նախատինքները, զոր ես ըրեր էի անոնց հանդէպ։

Այս մեծ թիւը զիս սարսափեցուց։ Կը խորհէի թէ իմ ամբողջ կեանքիս ընթացքին հարիւր հոգի վիրաւորած չեմ․ ի՞նչպէս կրնայի հարիւր հոգի վիրաւորել մէկ տարուան մէջ։

Քանի մը անուններ սրբեցի, պատրուակելով որ իմ յանցանքներս անոնց հանդէպ, ես չափազանցութեամբ դատած էի։

Յետոյ սրբեցի ուրիշ անուններ, պատճառաբանելով որ անոնք արդէն մոռցեր էին իմ վիրաւորանքներս և յիմար գործ պիտի ըլլար զանոնք իրենց յիշեցնելը։

Ապա, ջնջեցի այլ անուններ, ես ինծի ըսելով՝ որ անոնց տէրերուն հասցէները չեմ գիտեր։

Ցանկը հետզհետէ պզտիկցաւ և ի վերջոյ մնաց տասը հոգի։

Այդ անձերէն քանի մը հատին հեռախօսեցի և ուրիշներուն ուղղեցի նամակներ՝ աշխատելու համար դարմանելու իմ պատճառած վէրքերս։

Տասը հոգիներն ալ եղան շատ առատաձեռն իրենց ներողամտութեան մէջ։

Ասոր համար է որ յարաբերութեան մէջ պիտի մտնեմ միւս ութսուն հոգիներուն հետ։

Դարմանել վիրաւորանքներ, ահիկա լաւագոյն նուէրն է, զոր կրնամ ես ինծի ուղղել Նոր Տարւոյ առթիւ։

# ՍՐՏԱՊՆԴՈՒՄ...

## (ՆՈՐ ՏԱՐՈՒԱՅ ԽՈՀԵՐ)

Կը պատրաստուինք ճամբու դնել հին տարին ու դիմաւորել Նոր Տարին։

Կ'ըսեն՝ թէ այս հանգրուանը որոշ հաշուետուութեան և հաշուեյարդարի կայան մը պէտք է ըլլայ։

Ինչո՞ւ չէ։

Քանի որ շատ տխուր չեղաւ անցնող տարին։ Ու հայու մեր իրաւ ու ստեղծագործող լաւատեսութեամբը, տխուր պիտի չըլլայ նաև գալիք տարին։

Արդարև, մեր լաւատեսութիւնը ճակատագրապաշտական չէ՛, համակերպութեան միամիտ կամ թոյլ ակնկալութիւնը չէ՛։ Այլ հաւատքի և արդարութեան մասին իրաւ հասկացողութեան լաւատեսութիւն մըն է՝ մե՛րը։ Եւ ատով իսկ նշանակելի, բոլոր հաւաքականութիւններէն ներս թէ անոնց կողքին։

Մեր մայր հայրենիքը, անցեալ տարի եւս յաղթանակէ յաղթանակ սաւառնեցաւ, մանաւանդ մշակոյթի եւ գիտութեան մարզին մէջ։ Մեծն Մաշտոցի 1600ամեակի փառահեղ Յոբելեանէն ետք՝ ահա՛ միջժողովրդային մեծ բանաստեղծ Սայաթ-Նովայի 250ամեակի տօնակատարութիւնները, որոնք մարդկային ազնիւ սիրտի, պայծառ ու անբիծ միտքի, վեհանձն հոգիի պանծացումը հանդիսացան։ Ու արուեստը նոյնացուցին մարդուն հետ, մարդուն մէջ վերարծարծելով եղբայրութեան ու խաղաղութեան նուիրական տրամադրութիւններ։

Հապա Հայրենադարձութի՞ւնը․․․։ Իրանէն, քանի մը տասնեակ կարաւաններով, Յունաստանէն, Կիպրոսէն և ԱՄՀէն՝ ընտրեալ խումբերով, ազգահաւաքման սրբազան գործը շարունակուեցաւ ի հեճուկս օտար մարդասիրական խաղերու։ Այո՛, այժմ, սխալ ու ճիշտ հաշիւներով Պրազիլիա, Գանատա, և Աւստրալիա գացող հայն ալ իր աչքերը ուղղած պիտի պահէ սրբազնագոյն Արարատին, որուն ժպիտին ու շունչին մօտիկութիւնը կը վերանորոգէ մեզ․․․։

Հայ Դատը, հոգ չէ թէ ստուերին մէջ, գետին կը շահի հետզհետէ։ Անցնող տարին՝ եղաւ խմորումի տարի մը։ Ու մենք պիտի քաղենք պտուղը՝ կատարուած նախապատրաստական հաշիւներուն։

Ի՛նչ ըսել այն մե՛ծ սփոփանքին համար, զոր հայու հոգին վայելեց մեկնող տարուան մէջ՝ Վեհափառ Վազգէն Ա․ի և Տնօրհազարդ Խորէն Ա․ի վերահաստատած Միաբանականութեամբ, Հայաստանեայց Եկեղեցիէն ներս։ Մօտալուտ Ս․ Ծնունդի Պատարագի ընթացքին, վստա՛հ ենք, որ «Գոհութիւն» աղօթքին մէջ՝ հպարտանքով պիտի յիշենք մեր բոլոր Աթոռները, որոնք ներկայացուցչութիւններն են Ս․ Գրիգորի, Ս․ Յուսիկի, Ս․ Շնորհալիի․․․։

Օրհնութի՛ւն՝ Վեհ․ Վազգէն Ա․ի այցելութիւնն առ մեզ․․․և ուրախութի՛ւն՝ մեր Ս․Առաջնորդին Յոբելեանին տօնակատարութիւնը․․․։

Հայ գաղութներուն մէջ, անձնական անմիջական հաշիւներէ, փառասիրութենէ կամ անգիտակցական վիճակէ առաջնորդուած մարդիկ պահ մը հարուածեցին ազգային միաբանականութեան պատնէշը։ Բայց տարին չլրացած, հրաշիւք իմն, անոնք ըմբռնեցին թէ իրենց իսկ նստած ճիւղն է որ կը կտրեն։ Ուրախ ենք, որ արժէքները և դիրքերը վերահաստատուեցան իրենց տեղը, գէթ սկզբունքային մարզին մէջ։ Գերադաս հայեր և ստորադաս հայեր չկան։ Գերադաս մտաւորականներ, արուեստագէտներ ու գործիչներ չկան․․․ Ամէն մէկը իր տեղն ունի հասարակական կեանքին մէջ։ Նոր Տարին, ահա կը բերէ մեզի արդարութեան այդ սկզբունքն ալ․․․։

Պահ մը յուսալքուած ու դառնացած մեր հոգիները, մեր յոգնասպառ բիբերուն ետև, կը վերագտնեն իրենց աշխոյժն ու կենսունակութիւնը ի տես այն իրողութեան, թէ նիւթական մարզին մէջ աննկուն չարքաշութեան ընդունակ հայը, մտաւորական և գաղափարական գետնի վրայ ալ բացառիկ էակ մըն է։

Արդարև, կարգ մը արժէքաւորներու անդարձ մեկնումէն ետք, երբ առջևդ և շուրջդ կը տեսնես ուրիշ հիններ ու մանաւանդ նորեր, բոլորովին երիտասարդներ, որոնք վճռակամ ժառանգորդները կը հանդիսանան իրենց յանձնուած ազգային աւանդին, — սէր՝ հանդէպ Հայ Գիրին, Հայ Եկեղեցիին, Հայրենիքի Գաղափարին, և իտէալներ՝ մարդկային ու հայկական բարձրագոյն անշահախնդրութեան խարիսխով․․․։ Նոր Տարուան սեմին՝ միթէ վարակիչ չէ՞ ահիկա․․․

Վարակի՛չ, վասնզի հայրենական մեր ձգտումները, ազգային մեր պահանջները, արուեստի ու մշակոյթի մեր կարիքները՝ պէ՛տք ունին ատոր, քա՛յլ մը աւելի առաջ ընթանալու համար դէպի վերջնական խաղաղութիւն, դէպի եղբայրութիւն, դէպի ստեղծագործութիւն․․․

Գալուստդ բարի՛, Նո՛ր Տարի։

ՀԱՅԿ ԺԱՄԿՈՉԵԱՆ

«ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ ՅԱՏԿԱՑՈՒԱԾ

# ԱՐՄԷՆ ՏԱՏՈՒՐԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆԸ

## (ԵՐԵՒԱՆԻ ՌԱՏԻՈԿԱՅԱՆԻ 24 ՆՈՅ.Ի ՀԱՂՈՐԴՈՒՄԸ)

**Ծ. Խ.— Երեւանէն ուղղակի ստացանք եւ ստորեւ կը հրատարակենք սոյն յօդուածը՝ մեր ժրաջան աշխատակից Արմէն Տատուրի մասին։ Ցուցումով եւ հպարտանքով լոյս կ'ընծայենք զայն՝ անգամ մը եւս ուշադրութեանը յանձնելով մեր հասարակութեան, թէ Մայր Հայրենիքը ի՛նչպէս կը գնահատէ իր հարազատ ու վտարանդի արժէքաւոր զաւակները։**



Սկսում ենք մեր գրական հաղորդումը՝ նուիրուած եգիպտահայ արձակագիր Արմէն Տատուրի ստեղծագործութեանը։

Աշխարհացրիւ արեւմտահայութիւնը գնաց Արեւելք ու Արեւմուտք, Հիւսիս ու Հարաւ։ Բոյն դրեց, որտեղ իր համար երդիկ գտաւ։

Հազիւ օրուայ հացը ճարած՝ դպրոցի, գիր ու գրականութեան մասին մտածեց, Օտարութեան անապատում Մեսրոպեան ովասիսներ ստեղծեց, բայց ապրեց իր դրկից հարեւանի հետ։ Նրա հետ կիսեց իր կեանքն ու հացը, ուրախութիւնն ու տխրութիւնը։

Ծնուեց սփիւռքահայ գրականութիւնը՝ մի բազմերանգ հորըստութիւն, որի ատաղձը, երբեմն տարաշխարհիկ է, երեւոյթներն ու իրադրութիւնները, որ այնտեղ պատկերուած են, պատահում է, որ հայ իրականութեան ծնունդ չեն բայց նր..նց մթնոլորտում է ապրում հայութեան աստանդական հատուածը։

Հայ արուեստագէտը չէր կարող անտարբեր լինել այդ իրողութեան նկատմամբ։ Այստեղից՝ այն իւրայատուկ երանգները, որ արտայայտութիւն են գտնում գրականութեան և արուեստի բնագաւառները՝ տարբեր երկրներում ապրող սփիւռքահայ մշակների ստեղծագործութիւններում։

Այս խորհրդածութիւններին առիթ է տալիս Արմէն Տատուրի ստեղծագործութիւնը, մի գրող, որի ձայնը գալիս է եգիպտական անապատներից։ Պատմում է անապատի, նրա մարդկանց ծոցում հայ մարդկանց և ընտանիքների մասին։

Արմէն Տատուրը մամուլում հանդէս է եկել յետպատերազմեան տարիներին։ Նա իր պատմուածքների առաջին ժողովածուն՝ «Կը Սիրեմ Աշխարհը» լոյս է ընծայել 1948 թուականին, Գահիրէում. երկրորդ գիրքը, որ վերնագրել է «Անապատին Խորքէն», հրատարակուել է այս տարի, նոյն քաղաքում։

Արմէն Տատուրը գրում է ակնարկներ, պատմուածքներ, և տեսութիւններ տարբեր երեւոյթների մասին։ Հասակ նետած ու երկար տարիներ ապրած լինելով Եգիպտոսում, նա հաւասարապէս մօտ է եգիպտական ժողովրդի ու նրա հետ ամենօրեայ շփման մէջ գտնուող կեանքին։ Սակայն, ինչ խօսք, որ որտեղից էլ վերցնի իր ստեղծագործութեան նիւթը, նա միշտ ու ողջ էութեամբ մնում է հայ գրող, ոչ միայն նրա համար, որ արտայայտութեան միջոցը հայերէնն է, այլև յատկապէս իր խառնուածքով ու հայրենասիրութեամբ։

Արձակագիր է, բայց խառնըւածքով բանաստեղծ ու երազող։ Ինչպէս վկայում է Արմէն Տատուրի ստեղծագործութիւնը, նա այն մարդկանցից է, ովքեր, դժգոհ, շրջապատից, երազի գեղեցկութեանն են ձգտում։ Դա ենթադրում է կեանքում առկայ խոցերի, վատի ու տգեղի ժխտում, լաւի գեղեցկութեան ներբողում։

Ինչ խօսք, որ ուժեղագոյն տպաւորութիւնը, որ ստանում է ընթերցողը Արմէն Տատուրի ստեղծագործութիւնից, ոչ միայն նրա խոր հայրենասիրութիւնն է, այլև, նոյնքան ուժեղ մարդկայնութիւնը՝ սէ՛րը մարդու, աշխատող, տքնող, ազնի՛ւ մարդու նկատմամբ։ Գրողին մտահոգում են մարդու բախտն ու վիճակը կեանքում։ Նա յուզւում է մարդուն հասած իւրաքանչիւր դժբախտութիւնից։ Ոչ միայն յուզւում ու ցաւում է, այլև վրդովւում։ Արմէն Տատուրն իր ստեղծագործութեամբ տալով հանդերձ եգիպտական դասակարգային իրականութեան տարբեր երեսների պարզ ու ճշմարտացի պատկերը, միաժամանակ արուեստագէտի լեզուով, դատապարտութեան խօսք է ասում յոռի ու հակամարդկային երեւոյթների նկատմամբ։

Այդպիսին է Արմէն Տատուրն իր սոցիալական թեմաներով գրած երկերում, որոնք նրա ստեղծագործութեան կարեւոր երակներից մէկն է կազմում։

Համոզիչ և յուզիչ են «Տասը Մատները» պատմուածքի բովանդակութիւնն ու գոյները։ Նրա հերոսները՝ տասը անտուն — անտէր երեխաներ, ապրում են փողոցներից հաւաքած գլանիկի մնացուկներ վաճառելով, քնում են քաղաքի հրապարակներից մէկում, մզկիթի մօտ, կրակի շուրջը։ Հասարակութիւնը դաժան է իր այդ խորթ զաւակների նկատմամբ։ Նրանցից ամենաճարպիկը՝ Ալին, մի օր թրջուած չորերը չորացնելիս վառւում է կրակի բոցերի մէջ։ Ալիի ողջ մնացած ընկերները, որ յաջորդ օր բանտ էին տարուել ու բովհետև կարող էին իրենց վառած կրակով մերձակայ տները վտանգի ենթարկել, ազատւում են միայն այն ծխախոտավաճառի միջոցով, որին վաճառում են իրենց հաւաքած գլանիկի մնացուկները․․․ Ինչ հոգ, որ նրանք տասի փոխարէն ինն են։ Հեշտ է նրանց թիւը լրացնել։

Այդ նոյն բուրժուական հասարակութեան դաժանութեան մի պատկերն է նաև «Տպող Մեքենան» պատմուածքը, որի հերոսը՝ տասը տարեկան, տեսքով աւելի տարեց մի տղայ, կարծես տպագրական մեքենայի մէկ մասը դարձած, օրն ի բուն աշխատում է, գիր, գրականութիւն ու լոյս է տալիս բոլորին, բայց ինքը ոչինչ չի ստանում, զուրկ է մնում իր բաշխած լոյսից։

Բուրժուական Արեւելքի համար բնորոշ ու գունեղ է նաև «Ֆլուքաները» պատմուածքը։ Ծանըր է կեանքը Նեղոսի ապրանքատար այդ նաւերի վրայ, որոնց նաւաստիները, երբեմն ընտանեօք, ասես ստրուկներ լինեն գործատէր Հիւսէյնի, որ ծոյլ ու մեղկ, ըմբճարանում, գլգլակը միշտ շրթներին, արիւն քրտինք է թափել տալիս թշուառներին։

Զքաւորութեան թանձրացած ու տպաւորիչ գոյներով են գըրուած Արմէն Տատուրի մի շարք այլ պատմուածքները, ինչպիսիք են «Կօշիկ Ներկող Տղան», «Վերջին Հանդէսը», «Արևէն Այրած»ը եւայլն։

Այս վերջին պատմուածքով նա միաժամանակ բարձրացնում է երկու հարց․ այն, որ չքաւոր ընտանիքի աղջիկ Աշխէնը թշուառութիւնից դուրս գալու մտումով փախչում և ամուսնանում է իր գործատիրոջ որդու՝ Ալիի հետ և այն, որ նրա մայրը՝ Գոհարիկը իր աղջկան «մեռած» և «հայութիւնից դուրս եկած» է համարում։ Դա սփիւռքահայութեան ձուլման հարցն է։ Դրան՝ գրողն անդրադառնում է նաև «Բեւին» իմաստալից և յուզական պատմուածքում, որի հերոսը, մինչև վերջին շունչն ապրում է փոքրի ու մեծի հայութեան պահպանման հոգսով։

Այդ հոգսով են ապրում ինքը՝ գրողն ու նրա հերոսներից ոմանք։ «Երբ Տասը տարեկան էի․․․» պատումի հերոս տատիկն էր թոռնիկից հայերէնի դասեր է վերցնում, հայերէն սովորելու՝ մեր մայրենի լեզուով կարենալ խօսելու համար իր նորածին թոռնիկի հետ։

Հայրենասէր գրողը՝ մղուած սփիւռքահայութեան ինքնապաշտպանութեան մտահոգութիւնից, նրա պահպանման ազդակներ է որոնում։ Արմէն Տատուրի համար դրանից ուժեղագոյնը Մայր Հայ-

(Շար. տես էջ 2.)

# ՆՈՐ ՏԱՐԻՆ ԵՒ ՍՈՒՐԲ ԾՆՈՒՆԴԸ

## ԻՐԵՆՑ ԲԱՐԵԿԱՄՆԵՐՈՒՆ, ՅԱՃԱԽՈՐԴՆԵՐՈՒՆ ԵՒ ԱՇԽԱՏԱՒՈՐՆԵՐՈՒՆ

## ԿԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԵՆ

---

ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆ
ԳԱՀԻՐԷ

---

ԵԴՈՒԱՐԴ ՋՕՐԱՅԵԱՆ
Հ. 906479

---

ՍԱՍԻՔ-ԹՈՐԳՈՄ

---

ԳԷՈՐԳ ԵՐԵՒԱՆԵԱՆ
Պէյրութ

---

ԲԻՒԶԱՆԴ ԿԻԼԻԿԵԱՆ
Պէյրութ

---

«ԱՐԵՒ»
ՕՐԱԹԵՐԹ

---

ՖՕԹՕ-ԼԻԹՕ ՓՐԻՆԹ
ՆՈՒՊԱՐ
47, Թէրաա էլ Պուլագիա Հ.40281

---

ՄԵԹՐ ՊԱՐՈՅՐ ՄԱՍԻԿԵԱՆ
2, Շառուարպի փող. Հ.42259

---

ՏՊԱՐԱՆ ՏՕՆԻԿԵԱՆ
Կ. ՏՕՆԻԿԵԱՆ ԵՒ ՈՐԴԻՔ
Պէյրութ

---

ՏՊԱՐԱՆ ՇԻՐԱԿ
Կ. ԵՒ Յ. ԶԱՆՆԷՍԵԱՆ ԵՂԲ.
Պէյրութ

---

ՄԱՐՏԻԿ ԹԱԹԻԿԵԱՆ
3, Սէրակ էլ տին փող. Հ. 901883

---

ՊՈՂՈՍ ՍԻՄՈՆԵԱՆ
ԱՌԵՒՏՐԱԿԱՆ
17, Տուպրէ փող. Հ. 40281

---

ԴԵՂԱՐԱՆ ՄԵԹՐՕ
ՏՔ. ԺԻՐԱՅՐ ԱՐԹԻՆԵԱՆ
3, Էմատ էլ Տին Հ.44897—51731

---

PENELOPE HOSIERY CO. SAE
AND
EGYPTIAN WORSTED SPINNERS
SAE
A. KAVALDJIAN LTD.S.A.R.L.
TEL. 41080

---

ՎԻՒԼՔԱՆ
Մեքենական Մեծ Աշխատանոց
ՀՐԱՉ ԳԱԼԸՆԵԱՆ ԵՒ ԸՆԿ
35, Ապուտարտար փող. Հ.27931
Աղեքսանդրիա

---

STUDIO GARO
ԿԱՐՕ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ
40, Քասր էլ Նիլ փող. Հ. 47240

---

STUDIO ANTRO
ԱՆԴՐԱՆԻԿ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ
32, Թալաթ Հարպ Հ. 75542

---

STUDIO NICHAN
ՇԱՆԹ ՊԱԼԱԵԱՆ
8, Պաղտատ փողոց, Հելիոպոլիս

---

ՎԱՀԱԳՆ ՏԵՓՈՅԵԱՆ
Ելեկտրագէտ
93, Ռամսէս փողոց Հ. 79381

---

Մ. ԶԱՊԷՇԵԱՆ ԵՒ ԸՆԿ.
6, Տք. Ապտէլ Համիտ Սայիտ փողոց
Հ.43826

---

ԱՐԱՄ ԱԼԵՔՍԱՆԵԱՆ
Գոհարավաճառ
Խան էլ Խալիլի Հ.901412

---

ONNIG OF CAIRO
ՕՆՆԻԿ Կ. ԱԼԵՔՍԱՆԵԱՆ
Խան Խալիլի — Սեմիրամիս
Հ. 900186 — Հ.26535

---

BIJOUTERIE DIRAN
ՏԻՐԱՆ ԿԻՒՐԵՂԵԱՆ ԵՒ ԸՆԿ.
2, Պաղտատ փող. Հեռ. Հ.62309

---

SALON MICHEL & COSTA
5, Պաղտատ փողոց, Հելիոպոլիս
Հեռ. 65764

---

LA PRINCESSE
ԵՐՈՒԱՆԴ ԹԱՇՃԵԱՆ ԵՒ ԸՆԿ
1, Էմատ էլ Տին փող. Հ.41231

---

LA CONFIANCE
ՎԱՀՐԱՄ ԹԱԹԷՈՍԵԱՆ
10, Պաղտատ փող.
Հելիոպոլիս Հ. 61981

---

ԱԼ ՇԱՐՔ ԿՕՇԻԿԻ ԳՈՐԾԱՏՈՒՆ
ԱՐԱՄ ՕԳՆԱՅԵԱՆ
18, Ապտէլ Ազիզ փող. Հ.41534

---

ARABIAN NEON
&
FLUORESCENT LIGHT CO.
ՓՕԼ ՔԻԼԻՏՃԵԱՆ
133, Մոհամէտ Պէյ Ֆարիտ փողոց
Հ. 43316—44792

---

MAISON D'ART
ՅՈԼԱԿ ԵՐԶՆԿԱՑԵԱՆ ԵՒ ԸՆԿ.
29, Ապտէլ Խալէք Սարուաթ փող.
Հեռ. 40584

---

EXPRESS
PHOTO STORES
3, Միտան Թահրիր Հ. 30831

---

ՄՈՀԱՄԷՏ ՖԱԹՀԻ ԱՊՏԷԼ ՌԷՀԻՄ
Իրաւագիտական Խորհրդատու
Հեռ. 57013

---

ՀՐԱՆԴ ՈՍԿԵՐԻՉԵԱՆ
Ոսկերիչ
Սիֆֆէք Մանախ

---

Mirande

---

ՄԱԿԱՐ ԳՈՒՄՐՈՒԵԱՆ
ԿՕՇԻԿԻ ԳՈՐԾԱՏՈՒՆ
Ատտ Շէրիֆ — Դանիրէ

---

THE READER'S CORNER
BOOKSHOP
ԺՈՐԺ ՄԻՔԱՅԷԼԵԱՆ
33, Ապտէլ Խալէք Սարուաթ փող.
Հեռ. 42801

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة (ج.ع.م) تليفون ٥٧٠١٣
صاحبة الامتياز: السيدة عايده سيروبيان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B.P. 2111 Le Caire (R.A.U.) - Tél. 57013
Adresse Télégraphique. TCHAHAKIR, Cairo

Արտօնատէր — ԱՅՏԱ ՍԵՐՈՎԲԵԱՆ
Սեփականատէր խմբագիր — ՍԱՐԳԻՍ ՊԱԼԱԵԱՆ

Հիմնուած 1948ին

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 10 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 16 ՅՈՒՆՈՒԱՐ 1964 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 2,5 Եգ. Դհկ. կամ 25 Լիբ. Դհկ.

العدد رقم ١٠ — الخميس ١٦ يناير ١٩٦٤

# ԱՐԱԲ ԳԵՐԱՍՏԻՃԱՆ ԽՈՐՀՐԴԱԺՈՂՈՎԸ



Խիստ կենսական հարց մը — Յորդանան գետի ուղեփոխութեան խորայէլեան ծրագիրը — օրակարգ ունեցող Արաբ Պետերու Գերաստիճան Խորհրդաժողովը բացուեցաւ Երկուշաբթի, 13 Յունուար 1964, Արաբական Լիկայի Գահիրէի կեդրոնատեղիին մէջ, ժամը 17ին, Նախագահութեամբ Իրաքի Նախագահ մարաջախտ Ապտէլ Սալամ Արէֆի, աջին ունենալով Լիկայի ընդհ. քարտուղար Ապտէլ Խալէք Հասունան: Բացումէն անմիջապէս ետք՝ ժողովը վերածուեցաւ դռնփակի:

Առաջին նիստէն առաջ՝ նախագահ Ապտէլ Նասէր և Նախագահական Խորհուրդի անդամ և Գործադիր Խորհուրդի Նախագահ Ալի Սապրի, երկար ժամեր անցուցին օդակայանին մէջ՝ ընդունելու համար 13 երկիրներու բարձր հիւրերը, որոնց մէջ են՝ Թունուզի Նախագահ Հապիպ Պուրկիպա, Սէուտ. Արաբիոյ վեհապետ Սէուտ Թագաւոր, Մարոքի վեհապետ Հասան Բ., Յորդանանի Թագաւոր Յիւսէյն, Իրաքի Նախագահ մարաջախտ Արէֆ, Սուտանի Նախագահ Ապպուտ, Մարոքի վեհ.ին եղբայրը՝ իշխան Ապտալլա, Նախագահ Ահմէտ Պէն Պէլլա, Պաղեստինի ներկայացուցիչ Շուքէյրի, Զօրավար Հալիմ Իմամ, Տոքթ. Մոհմ. Այմէտ Սէլիմ, գնդապետ Ապպ.ո Շահին, Ռետա Սապըր, գեր-գնդապետ Ապտէլ Խալէք Աթիա, հարիւրապետ Էլ Հուէյտի և Գ. Ա. Համիտ Էլ Ֆէքի, Սուրիոյ Լէվա Ամին Էլ Հաֆըզ, Քուէյթի Էմիր Ա. Ս. Էլ Սապպահ, Լիպիոյ Էմիր Հասան Ռէտա (գահաժառանգ), Լիբանանի վարչապետ Ռաշիտ Քերամէ, և Եմէնի Նախագահ Ապտալլա Սալլալ:

Երկրորդ նիստը տեղի ունեցաւ Երեքշաբթի, ժամը 10ին: Նիստէն ետք հրատարակուեցաւ թիւ 1 հաղորդագրութիւնը, որուն մէջ կ'ըսուի՝ թէ ժողովը զբաղած է Յորդանան գետի ընթացքին փոփոխման խորայէլեան ծրագիրին քննութեամբը յատկապէս և պաղեստինի հարցով ընդհանրապէս:

Աֆրօ-ասիական բազմաթիւ երկիրներու Նախագահներ շնորհաւորական հեռագիրներ ղրկած են: Ամբողջ աշխարհի մամուլը և յատկապէս արաբական աշխարհը մեծ շահագրգռութեամբ և լարուած ուշադրութեամբ կը հետեւին ժողովին ու մեծ ակնկալութիւններ ունին անոր տալիք որոշումներէն:

Երէկ, Չորեքշաբթի, պետութեանց ղեկավարները քանի մը գաղտնի նիստեր գումարեցին, սիրալիր մթնոլորտի մէջ: Մինչ այդ՝ պատրաստ էր խորայէլեան ծրագիրի մասին (Յորդանանի ուղեփոխութեան վերաբերեալ) մանրամասն տեղեկագիր մը, ուսումնասիրուելու համար: Վերջին նիստին ընթացքին ժողովասրահ ընդունուեցան նաեւ արտաքին գործոց նախարարները:

Խորհրդաժողովի վեցերորդ նիստը գումարուեցաւ գիշերը: Մարոքի Հասան Բ. Թագաւորը մեկնած էր առտուն՝ ստիպողական գործով: Մարոքի արտաքին գործոց նախարար Ռետա Կերիտան կը նախագահէր պատուիրակութեան:

Վերջին՝ եօթներորդ նիստը գումարուեցաւ այսօր և պետութեանց ղեկավարները որոշեցին իրիկունը ստորագրել կայացած որոշումներուն ատենագրութիւնը:

ԱՄՀի Մշակոյթի և Ազգային Ուղղութեան Նախարար Տոքթ. Հաթէմ ընդունելութիւն մը պիտի տայ այս երեկոյ՝ ի պատիւ Գերաստիճան Ժողովին մասնակցող լրագրողներուն:

Ժողովը որոշած է՝ Ա) ստեղծել զինուորական միացեալ հրամանատարութիւն (ԱՄՀ պնդեց որ ընդհ. հրամանատարը իրաքցի զօրավար մը ըլլայ:) Բ) Քուէարկել միացեալ հրամանատարութեան ծախքերուն համար վարկ մը՝ զինուորական մասնագէտներու տեղեկագրին վրայ:

Ուրիշ որոշումներ կը մնան գաղտնի:

## ՀԱՅՐԵՆԻ ԱՇԽԱՐՀ

## ՀԱՅՐԵՆԻ ՀՈՂԻ ՎՐԱՅ

Ինչպէս գրած էինք, Եգիպտահայ հայրենադարձները աննախընթաց ոգեւորութեամբ ընդունուած են Լենինականի ժողովուրդէն: Կառամատոյցին վրայ, պետական և ազգային քայլերգներէն ետք, ելոյթներ ունեցած են սովետահայ պաշտօնական անձեր, գրողներ, նորոգ հայրենադարձ նըկարիչ Յակոբ Յակոբեան, նոյն կառաւանին պատգամախօս ընկ. Ազատ Պօղիկեան, Պօղոսեան վրժ.ի նախկին տնօրէն ընկ. Լեւոն Գալէմքեարեան: Տիկ. Ալիս Պօղիկեան կարդացած է հայրենիքին նուիրուած բանաստեղծութիւն մը, զոր արդէն տուինք «Ջահակիր»ի նախանցեալ թիւին մէջ: Ստորեւ կուտանք ընկերներ Պօղիկեանի և Գալէմքեարեանի խօսքերը:

### ԵՂԲԱՅՐ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ

ԱԶԱՏ ՊՕՂԻԿԵԱՆ

(Գահիրէէն հայրենադարձ)

Հարազատ և թանկագին ընկերնե՛ր.—

Ահա վերջապէս երկար տարիներու մեր փափաքը կ'իրագործուի:

Պանդխտութեան ծանր լուծը թօթափելով մեր վրայէն, վերջապէս այսօր ոտք կը դնենք Մայր Հողի վրայ, ու մենք մեզ կը զգանք աւելի ուժեղ և աւելի զօրեղ, որովհետեւ կանգնած ենք մեր սիրելի հողին վրայ, մեր հարազատ եղբայրներու կողքին, ալ վիշտ ու հոգ խոյս տուած են մեզմէ, որովհետեւ մեր գլուխին վրայ ունինք Ս. Հանրապետութիւններու Միութիւնը:

Մենք հայրենադարձներս, կը յայտնենք երախտագիտական մեր խոր զգացումները հայ ժողովրդի մեծագոյն բարեկամ Ս. Միութեան ղեկավար Ն. Ս. Խրուշչովին:

Մեր խորին շնորհակալութիւնները կը յայտնենք մեզի հանդէպ ցոյց տրուած այն մեծ հոգատարութեան և խնամքին, որ այսօր 12 օրերէ ի վեր կը տեսնենք և կը վայելենք մեր ռուս, վրացի, թէ հայ եղբայրներուն և քոյրերուն կողմէ: Ի փոխարէն այս բոլոր զոհողութիւններուն, մենք՝ հայրենադարձներս, կը խոստանանք մեր բոլոր ջանքերը թափել, որ կարողանանք աւելի զօրացնել մեր ժողովուրդները և մասնակից ըլլալ այն մեծ ու վսեմ կառուցման գործին, որ կը կատարուի մեր հայրենիքին մէջ:

Կեցցե՛ն հզօր եղբայր ժողովուրդները և անոր իմաստուն ղեկավարները:

Թող ամրապնդուի և աւելի՛ զօրանայ ժողովուրդներու բարեկամութիւնը:

Ա. ՊՕՂԻԿԵԱՆ

### ՀԱՅՐԵՆԻՔԻ ՍԷՐԸ ՄԵՐ ՍՐՏՈՒՄ

ԼԵՒՈՆ ԳԱԼԷՔԵԱՐԵԱՆ

(Աղեքսանդրիայէն հայրենադարձ)

Մեծ է մեր ամենուն ուրախութիւնն այսօր, թէ հայրենադարձներիս, թէ՛ հայրենաբնակ հայ ժողովուրդի, և թէ՛ համայն հայութեան: Այս համախմբումը հայութեան միասնութեան խորհըրդանիշն է: Ի՞նչ կայ աւելի գեղեցիկ իրականութիւն, քան լինել հարազատ մօր գրկում, ղարիպութիւնից դարձած տուն:

Կռունկը վերադառնում է իր բոյնը:

Հայրենակիցներ, Ս. Հայաստանի կազմակերպած ներգաղթը 1962, 1963 թուականներին և գալիք տարիներին արդէն իսկ ինքնին մեծ փաստ է:

Գանատա ներգաղթող հայ ընտանիքը իր զաւակներով առաջին քայլին իսկ մտնում է թըշուառութեան ու նորից դուրս գալիս մնում է փողոցներում՝ ցուրտ ու ձիւնին: Ու չգիտեն ուր երթան, ուր ապաստան գտնեն... Ու տեսէք մերոնք ինչ են անում... Արտասահման պատուիրակներ են ու-

(Շար. տես էջ Բ.)

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة (ج.ع.م) تليفون ١٣-٥٧
صاحبة الامتياز: السيدة عايده سيروبيان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B.P. 2111 Le Caire (R.A.U.) - Tél. 57013
Adresse Télégraphique. TCHAHAKIR, Cairo

Արտօնատէր — ԱՅՏԱ ՍԵՐՈՎԲԵԱՆ
Սեփականատէր խմբագիր — ՍԱՐԳԻՍ ՊԱԼԱՍԱՆ

Հիմնուած 1948ին

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 15 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 20 ՓԵՏՐՈՒԱՐ 1964 ՀԱՏԸ ՁԵՌՔԻ 2,5 Եգ. Դհկ. կամ 25 Լիբ. Դհկ.

العدد رقم ١٥ الخميس ٢٠ فبراير ١٩٦٤


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ՀՈՒՆԱՒՈՐՈՒՄ

### (ՀԱՅՐԵՆԱԴԱՐՁԻ ԵՒ ՄԻՒՍ ԳԱՂԹԻ ԱՆԴՐԱԴԱՐՁԸ)

Սակաւաթիւ հայ գրիչներ, բայց յատկապէս օտար պատմաբաններ, թիւրիմացաբար վճռած են, որ «հայը գաղթել կը սիրէ»...

Ըսինք՝ թիւրիմացաբար, և ասիկա բաւական է յայտնելու, որ մենք ո՛չ կը հաւատանք և ոչ ալ կ'ընդունինք որ «հայը գաղթել կը սիրէ»։

Գաղթի և վերագաղթի պատմութիւններով ճոխ է մեր անցեալը, ճի՛շդ է։ Բայց, պէտք չկայ պատմաբան կամ պատմագէտ ըլլալու՝ հաստատելու համար, որ հայը ոչ է կը սիրէ գաղթել, այլ ԿԸ ՍՏԻՊՈՒԻ գաղթել։

Արդարեւ, անյիշատակ թուականներէ ի վեր, դժբախտաբար, հայը գաղթած է, արտագաղթած է իր հայրենի երկրէն, ստիպեալ, պարտադրեալ և ակամայ...։ Եթէ բնութիւնը (երկրաշարժը, երաշտը կամ համաճարակներ) չէր զինք ստիպողը, որ ձգէ իր մայրենի օճախը, մի՛շտ բարբարոսներու արշաւանքներն էին անպակաս։

Մենք արիաբար ճակատած ենք, ինչպէս բնութեան, նոյնպէս և բարբարոսներու չարիքներուն։ Կռուած ենք։ Բայց երբ տեսած ենք որ կռիւը անհաւասար է միշտ, և այնտեղ՝ քաջութիւնը ինքնասպանութեան համարժէք և հաւասար է, նախընտրած ենք հեռանալ երկրէն՝ պահելու համար մեր կեանքը, գոյութիւնը, որպէսզի հնարաւորութիւն ունենանք օր մը վերադառնալու դէպի մեր օճախը և տիրանալու անոր, վերստին։

Բազում է թիւը այն դրուագներուն, հպարտաւիթ ու հերոսական, ուր հայը, հալածուելէ ետք, վերադարձած է յաճախ ու վերագրաւած՝ իր կորսնցուցած հողը։

Միա՛յն 1915ի եղեռնէն ետքն է, որ ճողոպրած մասը հայութեան, չէ կրցած վերստանալ իր իրաւունքները, ծանօթ խոչընդոտներով կամ օտար խաղերու պատճառով։

Ջինադադարին, վերապրած հայութիւնը ցրուեցաւ աշխարհի չորս ծագերը, զարգացուց և մեծցուց արդէն գոյութիւն ունեցող շատ մը գաղութներ, հիմնեց նոր գաղութներ և ստեղծեց համայնքային կեանք ու մշակութային կենցաղ։ Ամենուրեք՝ մենք ունեցանք եկեղեցի, դպրոց, ակումբ, թերթ, մարզարան և հայկական առեւտրական–ճարտարարուեստական մեծ հաստատութիւններ։

1945ին (1927ի և 1935ի մասնակի շարժումներէն ետք) պաշտօնապէս արտօնուեցաւ արտաքոյ Հայաստանի հայերուն հայրենադարձը սովետական իշխանութեան կողմէ, և մինչեւ 1948ի վերջը՝ հարիւր հազարէ աւելի հայեր ներգաղթեցին մայր երկիր։ Դժուարութիւններ և անփորձութիւն՝ պատճառ եղան որ ներգաղթը կասի ժամանակ մը։ Եւ ահա՛ 1961ին՝ կրկին ձեռնարկուեցաւ ներգաղթի ու 1962ին ու 1963ին հազարաւոր հայեր հայրենիք գացին Ա.Մ.Հ.էն, Կիպրոսէն և Իրանէն։ Բա՛ց է ներգաղթը և պիտի շարունակուի։

Մինչ այդ, հակազդելու համա՞ր սովետական որոշման ու ձեռնարկին, թէ իրենց ամայի եւ անմարդաբնակ հողերը շէնցնելու համար, Գանատա, Աւստրալիա եւ Պրազիլ բացին իրենց դռները հայոց առջեւ, մասնաւորաբար Միջին Արեւելքի հայոց առջեւ։ Օտար փրոփականտը եւ անոր հայանուն գործակալները յաջողեցան մօտ հինգ հազար հայեր համոզել ու տանիլ այդ գաղթավայրերը՝ հրեայ դրամատէրներուն ծառայելու համար։

Անշուշտ կան հայեր, որոնք բացառիկ և իւրայատուկ պայմաններ ունէին ու չէին կրնար Հայաստան երթալ։ Իրենց տեղը մնալն ալ աննպաստ կը հռչակուէր իրենց համար։ Ըսելիք չունինք բացառիկ պարագաներու տակ օտար տափաստաններ մեկնող հայերուն, հակառակ իրենց սրտին մէջ հայրենիքի սէրը զօրաւոր զգալուն։ Կը ցաւինք եւ կը տխրինք ասոնց համար, որ պիտի ձուլուին՝ եթէ մօտ ատենէն չդառնան Հայաստան։ Բայց ա՛լ աւելի կը ցաւինք եւ կը տխրինք անո՛նց համար, որոնք օտար երկիրներ կը մեկնին Հայաստանը չսիրելով (իր ռէժիմին համար) կամ դրամ դիզելու, հարստանալու սին մտադրութեամբ կամ յոյսով։ Կը ցաւինք եւ կը տխրինք նման ունայն պատճառներով իրենք զիրենք ու իրենց սերունդները կորստեան դատապարտող հայերուն համար։

Ու, հաւատացէ՛ք, ոչ մէկ իրաւ հայ կ'ուրախանայ, մե՛նք ալ չ՛ենք ուրախանար, այսօր, կարդալով, իմանալով, որ խոստումներու առջեւ տեղի տուած, փրոփականտի զոհ գացած բազմաթիւ հայեր դժբա՛խտ են արդէն այնտեղ ու թշուառութեա՛ն մատնուած։ Ու, կա՛մ կ'ուզեն վերադառնալ իրենց նախկին բնակավայրը և կա՛մ կը մտածեն ներգաղթել Հայաստան, եթէ հնարաւոր ըլլայ։ Ցաչոյդներու թիւը — ան ալ՝ մասնագէտներ եւ բարձր վկայականի տէր մարդիկ — շատ քիչ է։ Բոլորը դարձած են հասարակ եւ աժան բանուորներ, ու կը տուայտին։ Կ'ենթարկուին այնպիսի ահաւոր դժուարութիւններու եւ զրկանքներու, որոնց մէկ տասներորդն անգամ կրելու տրամադիր չէին եղած Հայաստանի մասին մտածելով։

(Շար. տեսնել 2րդ էջ)

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Ա. Մ. Հ.ի Ազգային Ժողովի մօտալուտ ընտրութեանց համար բացուած են թեկնածութեանց դիմումներու արձանագրութիւնները։ Պիտի ունենանք երկու հարիւրէ աւելի գործաւորներ, երեք հարիւրէ աւելի հողագործներ և մօտ վեց հարիւր այլ դասակարգերէ քաղաքացիներ՝ որպէս երեսփոխան։

Ընտրական պայքարի բարւոք յառաջացման համար, փոխ-նախագահ Զաքարիա Մոհիէտտին առաջարկեց գործնական մեթոտ մը, օժանդակութեամբ Արաբական Ընկերվարական Միութեան կազմակերպութեան։

* * *

Արաբ Գերագոյն Համաժողովի որոշումները գործնական փուլի մէջ դնելու աշխատանքով՝ Արաբական Լիկայի Ընդհ. քարտուղար Ապտէլ Խալէք Հասունա փաշա Զորեքշաբթի 19 Փետր.ին մեկնեցաւ դէպի Պէյրութ, ուրկէ պիտի անցնի Պաղտատ, Դամասկոս և Ամման։

* * *

Կիպրոսի Նախագահ Մակարիոս յայտարարած է, որ շատ բարեբաստիկ իրողութիւն մը պիտի ըլլայ, եթէ Արաբական Լիկան եւս խաղաղարար ոյժ դառնայ Կիպրոս, քանի որ Թուրք, յոյն և բրիտանական կառավարութիւնները կը պահեն՝ միջամտելու իրենց իրաւունքը կիպրական գործերուն։

* * *

Ընտրութիւններէն յաղթական դուրս եկաւ յոյն չափաւորներու կուսակցութեան պետ Ժորժ Փափանտրէու։ Եւ հազիւ գործի սկսած՝ բողոքագիր ներկայացուց Փոլ Թագաւորին՝ Միացեալ Նահանգներու և Մեծն Բրիտանիոյ դէմ, որոնք Միացեալ Ազգերու Կազմակերպութեան մօտ ձեռնարկներ կը կատարեն առանց ՕԹԱՆի հետ խորհրդակցելու։ ՕԹԱՆի անդամ է նաեւ Յունաստան։ Եւ Յունաստանի անտեսումը, կ'ըսէ Փափանտրէու, Թուրքիոյ հետ կրնայ մթնոլորտը ցաւալիօրէն պղտորել։

* * *

Ատլաս-Ալպեպյէն գալով՝ միջխորհրդարանային ֆրանսական պաշտօնական պատուիրակութիւն մը հասաւ Գահիրէ՝ Արաբական Ընկերվարական Միութեան հրաւէրով։ Պիտի ուսումնասիրուի Ա. Մ. Հ.ի և Ֆրանսայի մշակութային յարաբերութեանց բարելաւումը։ Մեծ պատիւներ ընծայուեցան Ֆրանսացի պատուիրակներուն։

* * *

Երեքշաբթի, 18 Փետրուարին՝ Տոքթ. Ապտէլ Գ տէր Հաթէմ կատարեց բացումը «Օմար Խայեամ» առաջնակարգ պանդոկին, Զամալէքի մէջ։

* * *

Նախագահ Կամալ Ապտէլ Նասէր հրովարտակով մը Հանրապետութեան փոխ-նախագահներ հռչակած է Անուար Էլ Սատաթը և Հասան Իպրահիմը։ Այսպէսով՝ փոխ նախագահներու թիւը կը հասնի 7ի։

## ԱՐՄԵՆԱԿ ՇԱՀՄՈՒՐԱՏԵԱՆԻ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԱՍՈՒԼԻՍ

Հայ կատարողական երգարուեստի մեծագոյն վարպետներէն՝ Արմենակ Շահմուրատեանի կեանքին ու գործունէութեան և առաւելաբար Եգիպտոսի մէջ իր տուած մենահամերգներուն նուիրուած երեկոյթը՝ Չորեքշաբթի 13 Փետր.ի գիշերը տեղի ունեցաւ Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Թէքէեան սրահին մէջ։



Արմ. Շահմուրատեան՝ 1925ին գծուած Ալ. Սարուխանէ

Մօ. Եդուարդ Ցակոբեան մէկ ու կէս ժամ խօսեցաւ իրեն յատուկ ջերմ ու խանդավառ շունչով և ցոյց տուաւ թէ ի՞նչպէս Ա. Շահմուրատեան բարձրացաւ իր յամառ կամքին և յարատեւ աշխատանքին շնորհիւ և հասաւ բարձրագոյն կատարներ ու նոյնիսկ երգեց Փարիզի օփերայի բեմին վրայ՝ Ֆաուստի դերով։

Ոսկեղէն ձայնը ժառանգ էր իր ծնողքէն, զոր կորսնցուցած էր մատաղ հասակին։ Բայց այդ նո՛յն ձայնը, Թաւշային դրոշմով հարուստ՝ տաք և հաղորդական, կըրցաւ կրթել շնորհիւ նիւթական օգնութեան մեծհոգի բարերար Մանթաշեանցի և բարոյական աջակ-

(Շար. տես էջ 6)



ԵՐԵՒԱՆԻ ՍԹԱՏԻՈՄԷՆ ՏԵՍԱՐԱՆ ՄԸ

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة (ج.ع.م) تليفون ١٣-٥٧
صاحبة الامتياز : السيدة عايده سيروبيان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B.P. 2111 Le Caire (R.A.U.) - Tél. 57013
Adresse Télégraphique. TCHAHAKIR, Cairo

Արտօնատէր — ԱՅՏԱ ՍԵՐՈՎԲԵԱՆ
Սեփականատէր խմբագիր — ՍԱՐԳԻՍ ՊԱԼԱՆԵԱՆ

ԲԱՑԱՌԻԿ ԹԻՒ, 8 ԷՋ

Հիմնուած 1948ին

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 16 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 27 ՓԵՏՐՈՒԱՐ 1964 ՀԱՏԸ ՉԵՌԻԲԻ 2,5 Եգ. Դհկ. կամ 25 Լիբ. Դհկ.

العدد رقم ١٦ — الخميس ٢٧ فبراير ١٩٦٤


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ՍԱՅԱԹ-ՆՈՎԱ 250

Սայաթ-Նովա, հայ ժողովուրդի բնածին զաւակ, կովկասեան ազգերու հաճարեղ երգիչ-աշուղ, սիրոյ, խմաստութեան և եղբայրութեան սաղերգու, բոլոր ժամանակներու մեծ բանաստեղծ ու փոլքլորիկ արուեստի առաջին ախոյեան։

Տօնուեցա՛ւ, դեռ կը տօնուի, ամենուրեք, Հայոց երկրի մայրաքաղաքէն մինչեւ յետին գիւղերը, սփիւռքի բոլոր անկիւններուն մէջ, աննախրնթաց խանդավառութեամբ և մեծ շուքով։

Տօնուեցա՛ւ, կը տօնե՛նք, կը տօնուի այս հրաշագործ գուսանի ծննդեան 250ամեակը՝ «Համաշխարհային Խաղաղութեան Պաշտպանութեան Խորհուրդ»ի որոշումով, և համաշխարհային ծաւալով։

Պատմութեան մէջ առաջին անգամն է որ հայ դէմք մը, իր ազգային և համամարդկային գործով ու արժէքովը, կ'արժանանայ համաշխարհային մեծարանքի ու պանծացման։ Եւ սակայն, մեզի համար, հպարտութեան, հոգեկան վերականգնումի մեծ առիթ մը ըլլալէ առաջ, գոյգն զարմանում մըն է՝ ա՛յն անտեսումին և անիրաւութեան, որուն նշաւակ եղած է ցարդ մեր ազգն ու մշակոյթը։ Ազգ յառաջադէմ և յառաջդիմական, մշակոյթ հարազատ և հարուստ, առողջ և խորապէս մարդկայնական, ազնուացնող ու բարձրացնող՝ մարդկային տեսակին համար։



Սայաթ-Նովան ամենէն յատկանշականն է համաշխարհային արժէք ունեցող մեր մեծ դէմքերուն մէջ։ Իր բանաստեղծութիւնն ու նուագը, իր երգն ու անոր բովանդակութիւնը, իրենց խորքով և ձեւով, գերազանցօրէն ազգային ըլլալով մէկտեղ, ե՛ն նաև անվիճելիօրէն միջազգային, զգացումի իրենց խորութեամբն ու ուժնութեամբը, մտածումի իրենց վեհութեամբն ու բիւրեղայնութեամբը և իրականացման ինքնատիպ, հաղորդական, ջերմ, գինովցնող, առինքնող հանգամանքովը։

(Շար. տեսնել 2րդ էջ)

## ՄԻՈՒԹԵԱՆ ՎԵՑԵՐՈՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ





Շաբաթ, 22 Փետրուարին, ԱՄՀի մայրաքաղաքին և գլխաւոր քաղաքներուն մէջ մեծ հանդիսաւորութեամբ տօնուեցաւ ՄԻՈՒԹԵԱՆ վեցերորդ տարեդարձը, նախաձեռնութեամբ Արաբ Ընկերվարական Միութեան։

Գահիրէի Համալսարանի մեծ սրահը լեցուն էր հրաւիրեալներով։ Նախագահական պատուանդանին վրայ տեղ գրաւած էին Նախագահ Կամալ Ապտէլ Նասէր, Փոխ-Նախագահները, Խորհուրդի անդամները, Նախարարներ և դիւանագէտներ։ Կային նաև զինուորականներ, գրագէտներ, արուեստագէտներ և մամուլի ներկայացուցիչներ օթեակներու մէջ և պատուոյ տեղերը։

Բացումը կատարեց Ալի Սապրի և խօսք տուաւ Իրաքի Արդարութեան Նախարար Քամէլ էլ Խաթիպին, որ ոգեւորիչ ճառով մը ողջունեց Արաբ Ժողովուրդներու Միութեան հանդիսութիւնը, յայտնելով Իրաքի կառավարութեան և ժողովուրդին եղբայրական զգացումները։

Ապա, ճառ մը խօսեցաւ Նախագահ Ապտէլ Նասէր, ճշդելով Միութեան կենսականութիւնը, գոյացած աքթին անբռնաբարե-

(Շար. տես էջ 2)

## ՎԵՐՋԻՆ ՀԱՅ ԱՇՈՒՂԸ

Վահէ Կոսեան, հեղինակը Սայաթ-Նովայի մասին գրուած այս յօդուածին որ լոյս տեսած է «Լա Կազէթ Տը Լօզան» թերթին մէջ, երիտասարդ բանաստեղծ մըն է՝ Ժընեւէն։ Արդէն իսկ բանաստեղծութեան բազմաթիւ մրցանակներ շահած է Զուիցերիոյ մէջ։ Ան 1961 թուին թարգմանած է Դանիէլ Վարուժանի «Հացին Երգը»։ Իր հայրը՝ Ռոպեր Կոսեան, Ժընեւի Համալսարանի դասախօսն է։

Անցեալ տարի բազմաթիւ հանդիսութիւններ տեղի ունեցան Հայաստանի և Արտասահմանի մէջ, Մեսրոպ Մաշտոցի ծննդեան 1600ամեակին առթիւ, որ 5րդ դարու սկիզբը ստեղծեց հայկական այբուբենը, յետոյ օգնեց Ս. Սահակ Հայրապետին, թարգմանելու համար Ս. Գիրքը հայերէնի։

Այս տարի Հայերը կ'ոգեկոչեն ուրիշ երեւոյթ մը, ոչ նուազ նշելի, Սայաթ-Նովան։ Հայաստանի այս վերջին մեծ աշուղը ծնած է 250 տարի առաջ։

Երեւանի Գրականութեան և Արուեստի Ակադեմիայի Թանգարանին մէջ, ներ այժս կը ցուցադրուի շատ մեծ շահագրգռութիւն ներկայացնող վաւերագրային գործ մը, Սայաթ-Նովայի 174 բանաստեղծութիւնները, ձեռագիր (երաժշտական բացատրութիւններով) գրուած Թիֆլիսի մէջ 1752–1759 թուականներուն։ Այս բանաստեղծութիւններուն 114ը՝ գրուած հայերէն տառերով, Ազըրպէյճաներէն են. ուրիշներ՝ գըրուած վրացական տառերով, հայերէն են։

Բացի հայերէնէն, վրացերէնէն և Թրքերէնէն, որոնց տիրացած էր, ը թուի թէ Սայաթ-Նովա գիտէր նաև բաւական լաւ պարսկերէն։ Բանաստեղծ, լեզուագէտ, յօրինող, ոսկի ձայնով երգիչ, անգերազանցելի յանկար-

(Շար. տես էջ 7)

## ՍԱՅԱԹ-ՆՈՎԱՅԻՆ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՇԻՐԱԶ

Ես էլ տաղով աշխարհ եկայ, բայց դու, իմ սար Սայաթ-Նովա,
Երեք շուրթեր իրար բերող Կովկասի եար, Սայաթ-Նովա,
Իմ կովկասեան մարգարտաշար լեռնապարը եռխ մատանի,
Դու մատանու անգին քարը, հայոց քնար Սայաթ-Նովա։

Ախ, թէ գայիր՝ քեզ կտայինք փառքի հազար դարեր վրան՝
Մասիս սարը՝ քեզ քեամանչա, ծիւնը՝ սադափ քարեր վրան,
Արծաթ Զանգու, ոսկի Արազ՝ միշտ հայախօս լարեր վրան,
Դու դարդիման իմ հայ սրտով աշխարհաեար, Սայաթ-Նովա։

Սարն Արարատ, որ քեզ ունի՝ միշտ անարատ լեռ կը մնայ,
Ազգն հաւաքող հսկայ մագնիս՝ մեզ տուն կանչող ձեռ կը մնայ,
Կրծքին սադափ քո քեամանչէն շատ աստղերից վեր կը մնայ,
Դու Մասիսն էլ տուն կը բերես սիրով մեր վառ, Սայաթ-Նովա։

Քո աչքերից ակունք տուիր Արազ ու Քուռ գոչ գետերին
Կեանքդ մարմար կամուրջ արիր եարիդ ճամբի ողջ գետերին,
Երգդ սիրոյ բանալի է նորաբողբոջ գոց սրտերին՝
Սիրով ամէն դուռ կը բանաս դու դարէ դար, Սայաթ-Նովա։

Զարենցի պէս Շիրազն՝ ասաւ՝ խելք ու միտքս տարել ես դու,
Լուսաւորչի կանթեղի քոյր երգիս սուտը վառել ես դու,
Երգով, առանց զէնք ու զօրքի քանի սարեր առել ես դու,
Կովկասն առել՝ երգ ես դառել վերքովդ անմար, Սայաթ-Նովա։

Այն մայրը, որ քեզ է ծնել՝ ուրիշ աստղեր դեռ կը ծնի,
Թէեւ փոքր է ոսկու նման, ինչ ծնեց՝ անմեռ կը ծնի,
Մի խեղճ քարուան, բայց դարէ դար անմահութեան բեռ կը տանի
Դու մի խարխուլ հայ խրճիթից ծնուած աշխարհ, Սայաթ-Նովա...

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

جاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة (ج.ع.م.) تليفون ٥٧٠١٣
صاحبة الامتياز: السيدة عايده سيروبيان (بالايان)

**TCHAHAKIR**
**HEBDOMADAIRE ARMENIEN**
B.P. 2111 Le Caire (R.A.U.) - Tél. 57013
Adresse Télégraphique. TCHAHAKIR, Cairo

*Արտօնատէր — ԱՅՏԱ ՍԵՐՈՎԲԵԱՆ*
*Սեփականատէր խմբագիր — ՍԱՐԳԻՍ ՊԱԼԱԵԱՆ*

*Հիմնուած 1948ին*

*ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 20 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 26 ՄԱՐՏ 1964* — *ՀԱՏԸ ՉԵՌՈՒԲԷ 2,5 Եգ. Դհկ. կամ 25 Լիբ. Դհկ.* — العدد رقم ٢٠ – الخميس ٢٦ مــارس ١٩٦٤


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ՅԱՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԳԱՂԱՓԱՐԸ

(ՀԱՅՈՑ ԶԱՏԻԿԻՆ ԱՌԹԻՒ)

*Ս. Յարութեան տօնը չե՛նք տօներ միայն աւանդական սովորութիւն մը պահպանելու համար։ Մեր ոգեպաշտական կրօնքին Հիմնադիրին չարչարման, թաղման ու վերստին կեանքի գալուն տօնը չէ՛ ատիկա, միայն։ Այլ, տօ՛նն է այն Գաղափարին, Յարութեան Գաղափարին, որ ապրող բանաւոր էակին մէջ գոյութիւն ունի և կը կենսաւորէ, կ'իմաստաւորէ, կը բարոյացնէ, կը գեղեցկացնէ և կը յաւերժացնէ մարդ տեսակին արարածային ճակատագիրը։*

*Հազար ինն հարիւր երեսունը մէկ տարի առաջ, երեսուն-երեքամեայ երիտասարդ մը, իր քարոզած յառաջդիմական միտքերուն համար, իր բանաձեւած նոր հաւատքին համար հալածուեցաւ, մատնըւեցաւ, խաչուեցաւ, ու կարծեցին թէ մեռաւ. բայց չմեռա՛ւ, յարութիւն առաւ մեռելներէն ու վերադարձաւ երկրաւոր զրկուածներուն, հալածուածներուն, չունեւորներուն, ընչազուրկներուն և դատապարտեալներուն։ Վերադարձաւ տառապածներուն, բռնաւորներուն, կքածներուն և հիւանդներուն։ Ու զօրութիւն ներշնչեց անոնց։ Դիմադրականութիւն սորվեցուց անոնց։ Պայքարիլ ուսուցանեց, ու իրենց հաւատքին, իրենց գաղափարին համար մեռնելու և մեռնելով յաղթանակ շահելու մեծութիւնը աւանդեց անոնց։*

*Նազովրեցի Յիսուս էր անոր անունը, որ կոչուեցաւ նաև Քրիստոս։ Պատմականօրէն գոյութիւն ունեցե՞ր է նման յեղափոխական մը. Աստուծոյ Որդի՞ն է ան. այս հարցումները ոչ մէկ կերպով կը նսեմացնեն Անոր իրականութեան հսկայական գեղեցկութիւնը և յաւերժական վսեմութիւնը։*

*Նազովրեցի փոխե՛ց աշխարհի դիմագիծը։ Նիւթապաշտութեան, եսասիրութեան, շահագործումի, ատելութեանց, պատերազմներու մէջ կորսուած մարդկութեան բերաւ ոգեպաշտութիւն, եղբայրսիրութիւն, արդարութիւն, անյիշաչարութիւն և խաղաղութիւն։*

*Եթէ չբերաւ իսկ եղբայրութիւնն ու խաղաղութիւնը ամբողջութեամբ և վերջնականապէս, անպայման բերաւ եղբայրսիրութիւնն ու խաղաղասիրութիւնը։*

*Եթէ չկրցաւ արգիլել՝ որ այնուհետև մարդիկ այլեւս չհալածեն, չչարչարեն, չխաչեն զիրար, գէթ բերաւ անոնց յաջորդող, մահուա՛ն ալ յաջորդող Յարութեան Գաղափարը։*

*Գիտակից մարդը այսօր չի հաւատար, որ կրնայ մեռնիլ։ Այո՛, մենք կը մեռնինք մարմինով, բայց մենք անմա՛հ ենք Ոգիով, Գաղափարով, Իտէալներով։*

*Քրիստոսի Սուրբ Յարութիւնը մեզի ծնեց այս անտեղիտալի և անխորտակելի ճշմարտութիւնը, ու Ինքն ալ դարձաւ ճշմարտութեան Ուղին...*

*Նոր մարդը, նոր հայը կը մերժէ դարերու ընթացքին այս վսեմ իրականութեան շուրջ մամռացած սնոտիապաշտութիւնները։ Հայաստանեայց Եկեղեցին արդէն գրեթէ զերծ է անոնցմէ, այլեւս։ Մենք կը մերժենք ժամանակավրէպ զարդարանքները՝ քրիստոնէական հաւատքին շուրջ, ու փարած կը մնանք Գաղափարին...*

*Փարած կը մնանք Գաղափարին, որովհետև մեր ժողովուրդին կեանքը յար եւ նման է Յիսուսի կեանքին. մեր հայրենիքին ճակատագիրը յար և նման է Քրիստոսի ճակատագրին։*

*Մե՛նք ալ հալածուեցանք մեր լուսեղէն և լուսաւոր զգացումներուն, մտածումներուն ու արարքներուն համար. մե՛նք ալ չարչարուեցանք, խաչուեցանք, թաղուեցանք, բայց յարութիւն առինք։*

*Ու, այսօր, մեր ժողովուրդը կ'ապրի և կ'ուռճանա՜յ, մեր մայրհայրենիքը կը վերընծիւղի և կ'արշաւէ՜ լոյսերու մէջ....։*

Յարութեան շո՜ւնչն է ահա՛
ջարդակոտոր ազգդ իմ...

*Այս տօնը, Զատի՜կ, բոլորէն աւելի մե՛րն է։ Տօնե՛նք զայն։ Տօնե՛նք արժանաւորապէս, փառաւորապէս։*

Ս. Յարութեան Տօնին առթիւ, «Ջահակիր»ի Խմբագրութիւն-Վարչութիւնը կը շնորհաւորէ իր բոլոր աշխատակիցներն ու ընթերցողները, եւ յատկապէս անոնք՝ որոնք Յարութիւն կը կոչուին։

## Ա.Մ.Հ.Ի ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԸ

### ԵՒ ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

*Հինգշաբթի, 19 Մարտին վերջացան Ազգային Ժողովի 350 երեսփոխաններու ընտրութիւնները և յայտարարուեցաւ որ Մարտ 26ին (այսօր) պիտի գումարուի Ազգ. Ժողովի առաջին նիստը։*

*Առաջին անգամ ըլլալով է որ, այս երկրին գերագոյն ժողովին մէջ (խորհրդարան) կը նստին գործաւորներ (թիւով 113) և երկրագործներ (թիւով 73)։ Այլ ասպարէզներու երեսփոխաններուն թիւն է 164։ Շրջան՝ 5 տարի։*

*Ազգ. Ժողովի կողքին պիտի ունենանք Նախարարաց Խորհուրդ մը։ Առաջին Խորհուրդը գլխաւորելու պաշտօնը յանձնուած է Պր. Ալի Սապրիի։*

*Երկուշաբթի, Մարտ 24ին, Նախագահ Կամալ Ապտէլ Նասէր հրապարակեց Սահմանադրական Յայտարարութիւն մը, որ ի զօրու կը դառնայ Մարտ 25էն ետք։ Այս յայտարարութեամբ, «Ժողովրդավար (դեմոկրատական) և ընկերվարական (սոցիալիստ) պետութիւն» մը ըլլալու Ա.Մ.Հ.ի հանգամանքը կ'ամրապնդուի, գործօն աշխատակցութեամբը «Արաբ Ընկերվարական Միութիւն» կազմակերպութեան։*

*Վեց գլուխներէ և 169 յօդուածներէ բաղկացած Սահմանադրական Յայտարարութիւնը կը ճշդէ և կը սահմանէ հանգամանքներ և պաշտօններ, որոնք՝ ազատութիւնը գերազանցօրէն անթերի և ճշգրտօրէն կիրարկուած պիտի դարձնեն։ Պետութիւնը, ընկերային կեանքի հիմնական սկզբունքները, հասարակութեան իրաւունքներն ու պարտաւորութիւնները, իշխանութեան կազմակերպումը, գերագոյն ղեկավարը, օրէնսդիր և գործադիր իշխանութիւնները, հանրապ. Նախագահին օրինավիճակը և ընտրական իր պայմանին (Ժող. հանրաքուէ) զօրութեան սահմանները, բանակը, դատաստանական մարմինները, պետական կրօնքը (մահմետականութիւն), պետական լեզուն (արաբերէնը), նկատի առնուած են այնտեղ՝ ծայրայեղ քննարկումով և լուրջ խորհրդակցութիւններով։ Այս յայտարարութեամբ՝ ջնջուած կ'ըլլան 5 Մարտ 1958ին և 27 Սեպտ. 1962ին հրապարակուած առժամեայ Սահմանադրութիւնն ու այլ օրէնքներ։ Նախագահի պաշտօնը վերջ կը գտնէ 26 Մարտ 1965ին։*

*Երեքշաբթի երեկոյ Պր. Ալի Սապրի աւարտեց նոր Դահլիճին կազմութեան աշխատանքները՝ և Չորեքշաբթի՝ Նախարարները երդում տուին՝ Նախագահին առջև, Հանրապետութեան պալատին մէջ։*

## ★ ՇԱՌԼ ԱԶՆԱՒՈՒՐ ★

### Ս. ՄԻՈՒԹԵԱՆ ՄԷՋ



ՇԱՌԼ, ԱՅՏԱ ԵՒ ՄԵԾ ՄԱՅՐԻԿԸ ԵՐԵՒԱՆԻ ՕԴԱՆԱՒԱԿԱՅԱՆԻՆ ՄԷՋ

«Ֆրանս-Սուար»ի մասնաւոր թղթակից Միշէլ Գուրնօ միշտ առաջինը կը հանդիսանայ հեռախօսով լուր տալու գործին մէջ։ Մարտ 21ին ան կ'իմացնէ որ Շառլ Ազնաւուր, Լենինկրատէն ետք Մոսկուա հասնելով՝ աննախընթաց ընդունելութեան եւ խանդավառ ցոյցերու արժանացաւ։ Եւ այդ պատճառով իսկ՝ ստիպուեցաւ փախուստ տալ, կորսնցնել իր հետքը, մի միայն երեւնալու համար գիշերը ժամը 7ին Սթանիսլաւսքիի թատրոնի իր խըցիկին մէջ, որ այդ ժամէն մինչեւ ուշ գիշեր, ուխտավայր մը դարձած է. հոն կուգան բանաստեղծներ, երաժիշտներ, նկարիչներ եւ պետական դէմքեր։ «Պետական աշխատանքը ստորադասուած է Ազնաւուրին, այս օրերուն, հոս» կ'ըսէ Գուրնօ։

Օրուան մէջ բանակի բարձրաստիճան սպայի մը հետ ձիավարժութիւն ընելէ ետք, կ'երթայ Ֆրանսայի դեսպան Պոտէի մօտ քանի մը վայրկեան, յետոյ «Փրաւտա», ապա Պոլշոյ եւ այլ ակադեմիաներ, ու գիշերը կը գտնէ, Խրուշչովէն եւ Միկոյեանէն ետք, փեսայ Ալեքս Էճուպէյի, բանաստեղծ Էօժէն Էվթուշենքոյի, երգահան Էտ. Քոլմանոսքիի, երգիչ Մարք Պեռնեսի եւ բազմաթիւ այլ մտաւորականներու ընկերակցութիւնը, զուլիսներու մէջ։

Էվթուշենքօ, որ յօրինած է «Նիւ Եորքի զանգակները» երգը, կ'ուզէ որ Ազնաւուր լսէ զայն եւ ըսէ՝ թէ Նախագահ Ճոնսըն դժգո՞հ պիտի մնայ արդեօք, երբ տեսնէ որ այս երգին մէջ՝ Ազատութեան արձանը հրաժարած է իր բարձր պատուանդանէն ու իջած է Պրոտուէյ, ապրող մարդոց մէջ ու կը հարցնէ. «Ամերիկացինե՛ր, ո՞ւր է ձեր Նախագահը», ճի՛շդ Աստուծոյ նման որ հարցուց. «Կայէ՛ն, ո՞ւր է Աբէլ եղբայրդ»...

Այս մթնոլորտին մէջ էր, որ անուանի երգահան Արամ Խաչատրեան եկաւ զուլիսներուն մէջ՝ երբ Ազնաւուր կը հիփնոսացնէր իր ունկնդիրները, յոգնախուռն սրահին մէջ։ Խաչատրեան գրեթէ յափշտակեց Ազնաւուրի դաշնակահար Հանրի Պիրսի ձեռքը, պոռալով. «Սիրելիս, ի՞նչպէս կ'ընէք, չեմ հասկնար. ձեզ անմիջապէս պաշտօնի կը կոչեմ...»։

Ազնաւուր, որ իր փառքի գագաթնակէտին հասաւ այստեղ, բաժին հանեց իրեն ընկերացող հինգ միւս երաժիշտներուն, զանոնք եւս մէկիկ մէկիկ լսել տալով մոսկովեան հասարակութեան, ամէն գիշեր։ Մոսկուայի հասարակութիւնը, Ազնաւուրի, Այտայի եւ միւս երաժիշտներուն հանդէպ ցոյց տըւած հասկացողութեամբ, ապացոյցը տուաւ գեղարուեստական իր բարձր պատրաստութեան, կ'աւելցնէ Գուրնօ։

Ազնաւուրներու մասին
կարդալ էջ 4

